## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ջերմապէս կը խնդրենք մեր բաժանորդներէն որ մինչեւ Դեկտեմբեր 31 փակեն իրենց բոլոր առկախ հաշիւները : Վարչութիւնս ի վիճակի չէ ապառիկ թերթ ղրկելու եւ պիտի ստիպուի դադրեցնել թերթերը այն բաժանորդներուն, որոնք ցարդ չեն նորոգած 1958ի բաժանորդագրական շրջանը :

Համաձայն տեղական մամուլի սովորութեան պիտի խնդրէինք որ մեր բոլոր բաժանորդները կանխիկ վճարեն իրենց բաժնեգինները :

Շնորհակալութիւն բոլոր անոնց որ իրենց կանոնաւոր վճարումներով ապահոված են թերթին հրատարակման կանոնաւորութիւնը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՍԷՆ ՇԱՄՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարուժան» կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Վարդան Խրիմեանին՝ իր շատ սիրելի հօրեղբօր պուկին՝ կսկծալի մահուան առթիւ, եւ Շաւարշ Նարդունիին իր թանկագին եղբօր մահուան առթիւ, ինչպէս նաեւ ընկերուհի Էլլէն Բիւզանդին՝ իր ամուսնին կորուստին առթիւ :

×

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն իր կազմով եւ յանուն իր բոլոր ենթակոմիտէներուն եւ խումբերուն անկեղծ ցաւակցութիւնները կը յայտնէ Շաւարշ Նարդունիին, իր եղբօր՝ Բաբսեղ Այվազեանի ցաւալի մահուան առթիւ :

×

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ ընկեր Տիգրան Թաղոյեանի եւ իր զաւակներուն իրենց կնոջ եւ մօր ողբացեալ Տիկին Վաղզանուշ Թաղոյեանի մահուան տխուր առթիւ :

× Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Շաւարշ Նարդունիին իր եղբօր տխուր մահուան առթիւ :

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Տիգրան Թաղոյեանի՝ իր կնոջ ողբացեալ Տիկին Վաղզանուշ Թաղոյեանի մահուան առթիւ :

×

ՎԻԷՆ.— Տէր եւ Տիկ. Ա. Քըլէեան եւ զաւակները իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն Վարդան եւ Կարապետ Խրիմեան ընտանիքներուն, իրենց հօրեղբօրորդւոյն՝ ժիրայր խրիմեանի, 29 տարեկան, ցաւալի մահուան առթիւ, զոհ եղբայրասպան դաւաճան գնդակի (Պէյրութ) :

Այս տխուր առթիւ եւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն հազար ֆրանք Մշակոյթի Տան :

×

Սեբաստիոյ Նահանգային Մուրատ Ուսումնասիրաց Միութիւնը խորին ցաւակցութիւններ կը յայտնէ Ստեփան Մարկոսեանի մահուան առթիւ իր այրիին եւ զաւակներուն :

× Այս առթիւ Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Սուրէն Ղուկասեան հազար ֆր., Յովհ. Ղազարեան հինգ հարիւր, Ամուճա երկու հարիւր, Յակոբ Աղաեան հինգ հարիւր, Ալիքսան Պալապանեան երկու հազար, Յովսէփ Բէկեան հազար, Յարութիւն Շիրվանեան հինգ հարիւր, Լութֆիկ Գաշըքեմանեան հինգ հարիւր :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Ճիպրայէլ Պահատուրեան եւ զաւակները (Լիոն) շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որ վշտակից եղան անձամբ եւ գրաւոր իրենց հօր եւ մեծ հօր ողբացեալ Մահտեսի Լութֆէթ Պաթմազեանի յանկածամահ մահուան առթիւ (Պոլիս Նոյ. 13ին) :

×

Որբերու Օգն. Մարմինը (Փարիզահայ Տիկնանց Միութիւն) շնորհակալութիւն կը յայտնէ ամէն անոնց որ բարոյապէս կամ նիւթապէս իրենց աջակցութիւնը բերին Նոյեմբեր 23ի իր ցերեկոյթին :

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

Օր. ԱՆԺԷԼ ՋԷՋԷՕՂԼՈՒ
Պ. ՏՐԴԱՏ ՍՎԱՃԼԵԱՆ
Ամուսնացած

Փոն տը Շէրի Նոյ. 30 Իսի

Կնքահայրութեամբ Պ. Ստեփան Կիւլխանի :

Այս առթիւ կը նուիրեն հազար ֆրանք «Յառաջ»ին եւ չորս հազար ֆրանք Իսիի Խրիմեան դպրոցին :

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Լիոնի Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբի կողմէ :

Դեկտեմբեր 7, կիրակի կէսօրէ յետոյ, ժամը 3էն մինչեւ գիշերուան 10ը, Յոյներու սրահը (5 Րիւ Պոնըփուա) :

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական եւ եւրոպական պարեր, առատ կերուխում եւ հաճելի անակնկալներ :

Կը հրաւիրուին բոլոր Լիոնահայերը անխտիր :

Այդ օրը բոլորդ Յոյներու սրահը քաջալերելու համար Նոր Սերունդը :

## ՆՈՒԷՐ

Պանեօլէն Տիկին մը երկու հազար ֆր. կը նուիրէ Առնուվիլի Ս. Խաչ եկեղեցիին իբր մատաղցու : Ինչպէս նաեւ երկու հազար ֆրանք Լիլայի հայկական դպրոցին : Ստանալ «Յառաջ»էն :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը տեղի կ'ունենայ այս չորեքշաբթի ժամը 9ին Գաֆէ Քաւէի սրահը :

Նիւթ՝ Հայ եկեղեցւոյ ազգային նկարագիրը :

Մուտքը ազատ է : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :





ԽՆՋՈՅՔ
ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ
ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 19ին, նախաձեռնութեամբ Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէին :

Հայոց եկեղեցիին սրահը :

Կը նախագահէ ընկ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ
Կը խօսի ընկ. ՍԱՀԱԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
Երգ, արտասանութիւն, նուագ :

ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ
ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ
(Դաշնակցութեան օրուան առթիւ)

Նախաձեռնութեամբ «Վարուժան» կոմիտէին :

Տեղի կ'ունենայ 6 Դեկտեմբեր, Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին, Ֆրանսական Սէրքըլ Կաթոլիկ, նոր սրահին մէջ, Րիւ տը լա Պրօս :

Կը նախագահէ ընկ. ՏԻԳՐԱՆ ԱՃՆԱԽՈՐԵԱՆ :

Գեղարուեստական բաժին, երգ, արտասանութիւն եւ հաճելի անակնկալներ :

Սիրով կը հրաւիրուին շրջանի և Սէնթ Էթիէնի ընկերներն ու համակիրները :

Սրահին ջերմութիւնը ապահովուած է :

Մուտքը ազատ է :

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին : Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէն : Ներկայանալ անդամատետրով : Կարեւոր օրակարգ :

ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Մուրատ Ուսումնասիրաց Միութեան անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը չորսին, Իսիի Խրիմեան վարժարանի սրահը : Օրակարգ՝ հանդէսի եւ շարժանկարի կազմակերպութիւն : Կը խնդրուի անդամներէն եւ հայրենակիցներէն ստիպողաբար ներկայ գտնուիլ :

ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

5 Դեկտեմբեր, Ուրբաթ ժամը 16ին
Ֆրանս 1էն (Փառի Էնթէր)
ՕՐ. ԺՈՍԼԻՆ ՏԻՐԱՏՈՒՐԵԱՆ
Պիտի երգէ ֆրանսերէն, իտալերէն եւ սպաներէն երգերու շարք մը :

ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՎԱՐԺԱՐԱՆԻ
ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԸ
Դեկտեմբեր 21ին :
Մանրամասնութիւնները յաջորդով :

Տէր եւ Տիկին Թադէոս Այվազեան եւ զաւակները (Պոսթոն), Տէր եւ Տիկին Յովհաննէս Այվազեան եւ զաւակները (Պոսթոն), Տէր եւ Տիկ. Միհրան Քիւրքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Արթին Քիւրքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հայկազ Քիւրքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յովհաննէս եւ Աննիկ Աչըգկէօզեան եւ զաւակները, Պ. Մանուկ Քիւրքճեան, ինչպէս նաեւ Եօրղանճեան, Քիւրքճեան Մեսրոպ, Ժաքօ, Լեւոն: Ալիս, Ժագլին, Այտա, Փիէռօ, Ժանէթ Աչըգկէօզեան ցաւով կը ծանուցանեն իրենց եղբօր, մօրեղբօր եւ ազգականին՝

**ԳՐԻԳՈՐ ԱՎՅԱՋԵԱՆԻ**

մահը: Յուղարկաւորութիւնը այսօր Շաբաթ ժամը 13.30ին, հաւաքուիլ իր բնակարանը 31 Րիւ Քոնտորսէ, Քաշան:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, 11 Րիւ Քոմփան: Կարեւոր օրակարգ: Ընկերներու բացակայութիւնը նկատի պիտի առնուի:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Վռամեան ենթակոմիտէն, այս Շաբաթ, ժամը 21-ին, սովորական վայրը: Ներկայ կ՚ըլլայ Շ. Կ.ի ներկայացուցիչը:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Ընկեր Կարօ ենթակոմիտէն, Կիրակի 14 Դեկտեմբեր, ժամը 15ին, սովորական վայրը: Ներկայ կ՚ըլլայ Շ. Կ.ի ներկայացուցիչը:

Ց. Կ. ԽԱՉի «Մանուկներու Օրուան» տօնակատարութեան յանձնախումբի ժողովը այս Երկուշաբթի ժամը չորսին Ռէժան սրճարանի վերնայարկը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Մուրատ Ուսումնասիրաց Միութեան անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը չորսին, Իսիի Խրիմեան վարժարանի սրահը: Օրակարգ՝ հանդէսի եւ չարժանկարի կազմակերպութիւն: Կը խնդրուի անդամներէն եւ հայրենակիցներէն անպայման ներկայ գտնուիլ:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Մուրատ Ուսումնասիրացի Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի ժամը 15ին Օթէլ Րաֆֆի, Րիւ Թիւպանօ: Օրակարգ՝ նոր վարչութեան ընտրութիւն:





ԽՆՋՈՅՔ

ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 19ին, նախաձեռնութեամբ Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէին եւ Նոր Սերունդի:

Հայոց եկեղեցիին սրահը:

Կը նախագահէ ընկ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Կը խօսի ընկ. ՍԱՀԱԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Օր. Շաքէ Յովհաննէսեան եւ թառի վրայ կը նուագէ՝ Գարեգին:

ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Լիոնի Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբի կողմէ:

Դեկտեմբեր 7, Կիրակի կէսօրէ յետոյ, ժամը 3էն մինչեւ գիշերուան 10ը, Յոյներու սրահը (5 Րիւ Պոնըփուա):

Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական եւ եւրոպական պարեր, առատ կերուխում եւ հաճելի անակնկալներ:

Կը հրաւիրուին բոլոր Լիոնահայերը անխտիր:

Այդ օրը բոլորդ Յոյներու սրահը քաջալերելու համար Նոր Սերունդը:

ԸՆՏԱՆԵԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

(Դաշնակցութեան օրուան առթիւ)

Նախաձեռնութեամբ «Վարուժան» կոմիտէին:

Տեղի կ՚ունենայ 6 Դեկտեմբեր, Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին, Ֆրանսական Սէրքլը Կաթոլիկ, նոր սրահին մէջ, Րիւ տը լա Պրօս:

Կը նախագահէ ընկ. ՏԻԳՐԱՆ ԱՋՆԱՒՈՐԵԱՆ:

Գեղարուեստական բաժին, երգ, արտասանութիւն եւ հաճելի անակնկալներ:

Սիրով կը հրաւիրուին շրջանի և Սէնթ Էթիէնի ընկերներն ու համակիրները:

Սրահին ջերմութիւնը ապահովուած է:

Մուտքը ազատ է:

ԾԱԽՈՒԻ ԵՆ

Սէնժէռ մեքենաներ, թանտեմ, մէկ օրօմաթիք պութօնէօզ քուփ – փիլով 71-30, (տարի 1958) եւ ֆօզպութօն օրօմաթիք 2 եւ 4 ծակի համար, Շասի 175:

Սէնժէռ մեքենայ, պութօնիէօզ առանց քուփ – ֆիլի, Շասի 71 – 30:

× Սիւրժըթէօզ Իւնիոն սփեսիալ, նոր մօտել, մօթէօր Քոնթինի:

× Սիւրժըթէօզ Իւնիոն սփեսիալ հին մօտէլ:

**Dalian** 72, AVE. VICTOR HUGO

MIC 49-46 CLAMART - SEINE




Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

ԱՐԱԲԱԿԱՆ ՄԻԱՑԵԱԼ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ քանի մը օր է խորհրդային հալածիչ Եաք օդանաւեր ստացած է: Նախագահ Նասր ձայնասփիւռ ճառով մը յայտարարեց եգիպտական օդային ուժը որ «ցոյց տուաւ իր արժէքը 1956ին՝ Ֆրանսայի եւ Անգլիոյ դէմ»:

ՊԱՐՍԻՑ ՇԱՀԸ տեսակցութիւններ ունեցաւ Պոլսոյ մէջ Ճէլալ Պայարի եւ Մէնտէրէսի հետ: Կը կարծուի թէ իրենց խօսակցութեանց գլխաւոր նիւթը եղած է Միջին-Արեւելքի եւ գլխաւորաբար Իրաքի դէպքերը:

ՖՐԱՆՍԱԿԱՆ ՀԱՄԱՅՆԱՎԱՐ կուսակցութեան Կեդր. Կոմիտէի բացառիկ նիստը վերջացաւ Ուրբաթ օր: Լայն տեղեկագիր մը ներկայացուց Էթիէն Ֆաժօն անդրադառնալով օրուան բոլոր հարցերուն, ապա բանաձեւ մը քուէարկուեցաւ ուր կը դատապարտուի մանաւորաբար ընկերվարական պարագլուխներու, ինչպէս Կի Մոլէի, ծանր պատասխանատուութիւնը՝ այս կացութեան մէջ:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին հերթական դասախօսութիւնը այս Զորեքշաբթի Քաֆէ Քառէի սրահը, ժամը 9ին:

Պիտի խօսի երիտասարդ համալսարանական ԼԵՒՈՆ ՄՈՄՃԵԱՆ: Նիւթ՝ «Ծաղրանկարիչ Աղեքսանտր Սարուխանի կեանքն ու գործը»:

Պիտի ներկայացնէ մօզական լապտերով նաեւ իր գործերուն կարեւորագոյնը:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Մարսէյլի հայ գաղութը սիրով կը հրաւիրուի Հ. Բ. Ը. Միութեան հայուհեաց մասնախումբի ամավերջի մեծ պարահանդէսին, որ տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր քսանին, Շաբաթ գիշեր, ժամը քսանէն մինչեւ արշալոյս, Օթէլ ըՍփլանտիտի շքեղ սրահներուն մէջ, ի նպաստ իր բարեսիրական ձեռնարկներու:

Նախագահութեամբ Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովի պատուիրակներ

ՏՕՔԹ. Ա. ՊՈՒՅՈՒՔԵԱՆԻ և Գ. ՊԱՀՐԻ

Մասնակցութեամբ՝
Միութեան տեղական մասնաժողովին եւ երկսեռ երիտասարդութեան:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ
## ՎԱՐԺԱՐԱՆԻ

Սամուէլ Մուրատեան վարժարանի Կաղանդի Ծառի հանդէսը Դեկտեմբեր 21ին ժամը 16էն սկսեալ մինչեւ 22:

Գեղարուեստական բաժինը կազմակերպուած է վարժարանի մեծ եւ փոքր աշակերտներու կողմէն, պաւեչտախառն ներկայացումներ, արտասանութիւններ, խաղեր եւ երգեր:

Շքասեղան հայկական աւանդական ճոխութեամբ:

Սիրով կը հրաւիրուին յարգելի բոլոր հայրենակիցները:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը կը տօնէ «Մանուկներու Օր»ը Յունուար 11ի Կիրակի օրը, Սալ Քոէքէի մէջ:



**Imprimé sur les presses du journal HARATCH**
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, 17 բիւ Պլէօ: Կարեւոր օրակարգ:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը տեղի կ'ունենայ յառաջիկայ 20 Դեկտեմբերին, Շաբաթ իրիկունը, Սալ տէ Ֆէթի ընդարձակ սրահներուն մէջ:

Հաճելի անակնկալներ եւ առաջնակարգ նուագախումբ:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## ԴՊՐՈՑԱՍԷՐ
## ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ
ՏՕՆԱԾԱՌԸ
Դեկտեմբեր 21ին
Մանրամասնութիւնները՝ յաջորդով:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

——o——

× Յարութիւնեան Գրիշա, որդի Գէորգի, ծնած 1924 Երեւան, մասնակցած է մեծ պատերազմին:

× Գոչարեան Նորայր որդի Սարիբէկի, ծնած 1908 թուին, իսկ Աղասի Գոչարեան 1912ին, որոնք մասնակցած են մեծ պատերազմին:

× Պօղոսեան Արմենակ որդի Էյվազի, ծնած 1903 թուին եւ մասնակցած մեծ պատերազմին:

× Սարգսեան Մկրտիչ որդի Պապալի որ ծնած է 1919 թուին, մասնակցած է մեծ պատերազմին:

Փնտռուող վերայիշեալ անձերու հասցէները գիտցողներէն կը խնդրուի տեղեկացնել եկեղեցւոյ դիւանատունը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8):

Այրի Տիկին Միհրան Ֆերհատեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Ֆերհատեան եւ իրենց տղան, Տէր եւ Տիկին Պերճ Սուճուքճեան եւ զաւակները, Օր. Այտա Ֆերհատեան, այրի Տիկին Արշալուհի Իւթիւճեան, այրի Տիկին Արաքսի Մխաքեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կարպիս Քանթար – ճեան եւ զաւակը, այրի Տիկին Արզուհի Մխիթարեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Ֆերհատեան, Տիկին Անժէլ Հաքի եւ զաւակները, Տիկին Քիւրքճեան եւ զաւակները, ինչպէս նաեւ բոլոր ընտանեկան պարագաները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ-հօր, եղբօր, մօրեղբօր եւ ազգականին՝

ՄԻՀՐԱՆ ՖԵՐՀԱՏԵԱՆԻ

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ Դեկտ. 13ին, 57 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր՝ երեքշաբթի ժամը 14ին Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցիին մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Բոնի սու Պուայի գերեզմանատունը, ամփոփուելու համար ընտանեկան դամբարանը:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի Քաֆէ Քառէի սրահը, ժամը 9ին:

Պիտի խօսի երիտասարդ համալսարանական ԼԵՒՈՆ ՄՈՄՃԵԱՆ: Նիւթ՝ «Մարդանկարիչ Ալեքսանդր Սարուխանի կեանքն ու գործը»:

Պիտի ներկայացնէ մաղական լապտերով նաեւ իր գործերուն կարեւորագոյնը:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Մարսէյլի հայ գաղութը սիրով կը հրաւիրուի Հ. Բ. Ը. Միութեան հայունեաց մասնախումբի ամավերջի մեծ պարահանդէսին, որ տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 31ին, Շաբաթ գիշեր, ժամը 22էն մինչեւ արշալոյս, Օթէլ ըՍփլանտիտի շքեղ սրահներուն մէջ, ի նպաստ իր բարեսիրական ձեռնարկներու:

Նախագահութեամբ Միութեան Երոպայի Կեդր. Յանձնաժողովի պատուիրակներ

ՏՕՔԹ. Ա. ՊԻՒՑԻՒՔԵԱՆԻ և Գ. ՊԱՀՐԻԻ

Մասնակցութեամբ՝

Միութեան տեղական մասնաժողովին եւ երկսեռ երիտասարդութեան:



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՆՈՒԷՐ

Լոնտոնէն ընկ. Յովհ. Կոնդալէս Զալըքեան Մաթէոս Լէյլէկեանի եւ Նշան Սարգիսեանի ազատ արձակման բարեբաստիկ լուրին առթիւ իր ուրախութիւնը յայտնելով հետեւեալ նուիրատուութիւնները կ'ընէ՝

50 ոսկի «Յուսաբեր»ին.
50 անգլ. ոսկի վերթերաններու ֆոնտին
10 ոսկի Փարիզի Մշակոյթի տան.
10 ոսկի «Յառաջ»ին
եւ 10 ոսկի «Հայ Բոյժ»ին:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Սամուէլ Մուրատեան վարժարանի կաղանդի Ծառի հանդէսը Դեկտեմբեր 21ին ժամը 16էն սկսեալ մինչեւ 22:

Գեղարուեստական բաժինը կազմակերպուած է վարժարանի մեծ եւ փոքր աշակերտներու կողմէն, դաւեշտախառն ներկայացումներ, արտասանութիւններ, խաղեր եւ երգեր:

Շքասեղան հայկական աւանդական ճոխութեամբ:

Սիրով կը հրաւիրուին յարգելի բոլոր հայրենակիցները:

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը տեղի կ'ունենայ յառաջիկայ 20 Դեկտեմբերին, Շաբաթ իրիկունը, Սալ ոէ Ֆէթի ընդարձակ սրահներուն մէջ:

Հաճելի անակնկալներ եւ առաջնակարգ նուագախումբ:



## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի կողմէ Դեկտ. 23ին, ժամը 21ին, Իսիի Ալհամպրա սինեմային մէջ: Կը ներկայացուի Շիրվանզադէի

«ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ»ը

Միջնարարին տօնածառ եւ մրցանակաբաշխութիւն Խրիմեան դպրոցի աշակերտութեան:

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՏՕՆԱԾԱՌԸ

Դեկտեմբեր 21ին

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը կը տօնէ «Մանուկներու Օր»ը Յունուար 1ի կիրակի օրը, Սալ Քոէքէի մէջ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն սոփ-պողարար ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյեան ժամը 21ին, Օհանջանեան ակումբը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ընկերական ժողովը այս ուրբաթ երեկոյ ժամը 21ին «Ռէժան»ի վերնայարկը:

Պարտաւորիչ ներկայութիւն:

ՊԱՆԵԽՕ-ՔԱՇԱՆԻ Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ չորեքշաբթի ժամը 15.30ին, Տիկին Հէքիմեանի բնակարանը. ներկայ պիտի ըլլայ նաեւ Կեդր. Վարչութեան ներկայացուցիչը: Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է:



ՄԱՐՍԷՅԼ

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Կը ծանուցանէ թէ տարեկան իր

ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Տեղի պիտի ունենայ

31 Յունուար, Շաբաթ գիշեր,

Քլիւպի մէջ

մըտեան Գերմանիոյ Տնտեսական նախարար Էրհարթի հետ։ Մօտ 40 վայրկեան տեւած այս հանդիպումին ընթացքին մասնաւորապէս խօսուած է Հասարակաց Շուկայի եւ փոխանակութեան ազատ գօտիի շուրջ։

Այս կարեւոր հարցի մասին խօսեցաւ նաեւ Իտալիոյ Վարչապետ Ֆանֆանի, որ մօտ 45 վայրկեան մնաց Տը Կոլի մօտ։

Ֆանֆանի – Տը Կոլ խօսակցութեանց երկրորդ գլխաւոր կէտն էր Պերլինի հարցը եւ այս ուղղութեամբ Իտալիոյ Վարչապետը գոհ. Տը Կոլի յայտնեց Ատընաուըրի հետ իր ունեցած խորհրդակցութիւններուն արդիւնքը։ Տեղեկագիրը կը գրուի մասնաւորապէս այս խօսակցութիւններուն բարեկամական նկարագրին վրայ։ Ֆանֆանի եւ Տը Կոլ անհրաժեշտ նկատած են փրանքեւիտալական յաճախակի հանդիպումներ եւ մանաւանդ բանակցութիւններ ունենալ՝ երկու երկիրները շահագրգռող հասարակաց խնդիրներու շուրջ։

Երեքշաբթի օր Տը Կոլ պիտի ընդունէր Անգլիոյ Արտաքին նախարար Լոյտի եւ Աւստրիոյ Արտաքին նախարար Ֆիկլի այցելութիւնը։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս կիրակի հանդիսաւոր Ս. պատարագ Շաւիլի եկեղեցւոյ օծման տարեդարձին առթիւ։ Կը պատարագէ եւ կը քարոզէ հայրապետական պատուիրակ Ս. Եպս. Մանուկեան։

Յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն՝ եկեղեցւոյ բարերարներէն Պ. Ա. Համբարձումեանի, Օր. Տիրուհի Անդրանիկեանի եւ Տէր եւ Տիկին Ա. Խանճեանի ննջեցելոց յիշատակին։

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Մկրտիչեան Գուրգէն, ծնած Լենինականի շրջանը, Վերին Ղանլիճա գիւղը 1916ին. հօրը անունը Պետրոս, մօրը՝ Մարիամ. պատերազմի մասնակցած է 1941ին։ Լուր ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Պ. Սարգիսեանի՝

5, Rue des Houbeaux STAINS (Seine)

Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել։

## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹԻՒՆ

Այլըն Փարքէն (Ամերիկա) Պ. Յ. Զալլաքեան փրանսարնակ իր ազգականներուն եւ բարեկամներուն կը շնորհաւորէ Ս. Ծնունդն ու Նոր Տարին եւ սրտաբուխ մաղթանքներ կ՚ուղղէ անոնց։

× Պ. Զալլաքեան, տօնական օրերու առթիւ 2000 Փր. կը նուիրէ «Յառաջ»ին։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի Քաֆէ Քառէի սրահը, ժամը 9ին։

Պիտի խօսի երիտասարդ համալսարանական ԼԵՒՈՆ ՄՈՄՃԵԱՆ։ Նիւթ՝ «Ծաղրանկարիչ Ալեքսանդր Սարուխանի կեանքն ու գործը»։

Պիտի ներկայացնէ մողական լապտերով նաեւ իր գործերուն կարեւորագոյնը։

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Մարսէյլի հայ գաղութը սիրով կը հրաւիրուի Հ. Բ. Ը. Միութեան հայուհեաց մասնախումբի ամավերջի մեծ պարահանդէսին, որ տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 27ին, Շաբաթ գիշեր, ժամը 21էն մինչեւ արշալոյս, Օթէլ ըՍփլանտիտի շքեղ սրահներուն մէջ, ի նըպաստ իր բարեսիրական ձեռնարկներու։

Նախագահութեամբ Միութեան Եւրոպայի Կեդր. Յանձնաժողովի պատուիրակներ

ՏՕՔԹ. Ա. ՊԻՒՑԻՒՔԵԱՆԻ և Գ. ՊԱՀՐԻԻ

Մասնակցութեամբ՝

Միութեան տեղական մասնաժողովին եւ երկսեռ երիտասարդութեան։

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի կողմէ Դեկտ. 23ին, ժամը 21ին, Իսիի Ալհամպրա սինեմային մէջ։ Կը ներկայացուի Շիրվանզադէի

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »Ը

Մէջնարարին տօնածառ եւ մրցանակաբաշխութիւն Խրիմեան դպրոցի աշակերտութեան։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Սամուէլ Մուրատեան վարժարանի կաղանդի Ծառի հանդէսը Դեկտեմբեր 21ին ժամը 16էն սկսեալ մինչեւ 22։

Գեղարուեստական բաժինը կազմակերպուած է վարժարանի մեծ եւ փոքր աշակերտներու կողմէն, դաւեշտախառն ներկայացումներ, արտասանութիւններ, խաղեր եւ երգեր։

Շքասեղան հայկական աւանդական ճոխութեամբ։

Սիրով կը հրաւիրուին յարգելի բոլոր հայրենակիցները։

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ՏՕՆԱԾԱՌԸ

Դեկտեմբեր 21ին

ժամը 15ին

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը տեղի կ՚ունենայ յառաջիկայ 20 Դեկտեմբերին, Շաբաթ իրիկունը, Սալ Ֆէթի ընդարձակ սրահներուն մէջ։

Հաճելի անակնկալներ եւ առաջնակարգ նուագախումբ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն ստիպողաբար ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյեան ժամը 21ին, Օհանջանեան ակումբը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ընկերական ժողովը այս ուրբաթ երեկոյ ժամը 21ին «Ռէժան»ի վերնայարկը։

Պարտաւորիչ ներկայութիւն։

ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը տեղի կ՚ունենայ չորեքշաբթի ժամը 15,30ին, Տիկին Հէքիմեանի բնակարանը. ներկայ պիտի ըլլայ նաեւ Կեդր. Վարչութեան ներկայացուցիչը։ Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Մարսէյլի Շրջանային Վարչութեան վարչական ժողովը՝ այս ուրբաթ երեկոյեան ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ. բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Կեդր. Վարչութիւնը Փարիզի շրջանի մասնաճիւղերով Կապոյտ Խաչի Օրը կը տօնէ Սարպանի մեծ ամփիթատրոնին մէջ, Ապրիլ 12ին։













Imprimé sur les presses du journal HARATCH

17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Ն. Պէզիրճեան, Օր. Աղաւնի Ղազարոսեան, Օր. Սրբուհի Ղազարոսեան, ինչպէս նաեւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց մօր եւ ազգականին ԱՅՐԻ ՏԻԿ. ՀԱՅԿԱՆՈՅՇ ՂԱԶԱՐՈՍԵԱՆԻ մահուան առթիւ։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս կիրակի հանդիսաւոր Ս. պատարագ Շաւիլի եկեղեցւոյ օծման տարեդարձին առթիւ։ Կը պատարագէ եւ կը քարոզէ հայրապետական պատուիրակ Ս. Եպս. Մանուկեան։

Յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն՝ եկեղեցւոյ բարերարներէն Պ. Ա. Համբարձումեանի, Օր. Տիրուհի Անդրանիկեանի եւ Պ. Ա. Խանճեանի ննջեցելոց յիշատակին։

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը։

×

Պ. Կարապետ Սաղըրղեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ Հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց կնոջ եւ մօր՝

ՀՌԻՓՍԻՄԷ ՍԱԳԸՐՃԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, այս Կիրակի յետ պատարագի։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10.45ին։ Կը խօսի Պատուելի ՍԻՍԼԵԱՆ, նիւթ՝ «Ան որ իր անձը ինծի համար կը կորսընցնէ, պիտի գտնէ զանիկա»։





### ՊԱՐԱՆՑԻԿ ՅԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբին, այս կիրակի ժամը 15էն 23, Ազգ. Տան մէջ, 32 բիւտը Թրէվիզ։

Հաճելի մթնոլորտ։

Հասոյթը պիտի յատկացուի «Հայաստան» պարբերաթերթին։

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ

ՏՕՆԱԾԱՌԸ
Դեկտեմբեր 21ին
ժամը 15ին

Բացի հայերէն եւ ֆրանսերէն արտասանութիւններէն եւ երգերէն, տեղի պիտի ունենան հետեւեալ ներկայացումները.— «Պիտի պաշտեմ հայերէն լեզուն»։ «Կիրակոս աղային ճաշարանը» կատակերգութիւն։ «Կաղանդ պապային խստութիւնները» (ֆրանսերէն) տրամախօսութիւն «Հին եւ նոր տարին», եւ նուէրներու բաշխում։ Կը հրաւիրուին ծնողները։

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Սամուէլ Մուրատեան վարժարանի կաղանդի Ծառի հանդէսը Դեկտեմբեր 21ին ժամը 16էն սկսեալ մինչեւ 22։

Գեղարուեստական բաժինը կազմակերպուած է վարժարանի մեծ եւ փոքր աշակերտներու կողմէն, զաւեշտախառն ներկայացումներ, արտասանութիւններ, խաղեր եւ երգեր։

Շքասեղան հայկական աւանդական ճախութեամբ։

Սիրով կը հրաւիրուին յարգելի բոլոր հայրենակիցները։

### ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը տեղի կ՚ունենայ յառաջիկայ 20 Դեկտեմբերին, Շաբաթ իրիկունը, Սալ տէ Ֆէթի ընդարձակ սրահներուն մէջ։

Հաճելի անակնկալներ եւ առաջնակարգ նուագախումբ։







### ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն սռիպողաբար ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյեան ժամը 21ին, Օհանջանեան ակումբը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ընկերական ժողովը այս ուրբաթ երեկոյ ժամը 21ին «Ռէժան»ի վերնայարկը։

Պարտաւորիչ ներկայութիւն։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը չորաթ երեկոյեան Դեկտ. 20, ընկ. Սիմոնեանի բնակարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Խիստ կարեւոր օրակարգ։

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ընկ. ընդհ. ժողովը այս չորաթ իրիկուն ժամը 21ին, Խրիմեան դպրոցը։ Ներկայ կ՚ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը։ Խիստ կարեւոր օրակարգ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը այս չորաթ իրիկուն ժամը 8.30ին (Քաֆէ Լիոն) սրճարանին վերնայարկը։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, 17 բիւ Պլէօ։

ԼԻՈՆ.— Ֆր. Կապոյտ Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները, այս երկուշաբթի ժամը 16ին, Յոյներու սրահը։ Կարեւոր օրակարգ։

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Մարսէյլի Շրջանային Վարչութեան վարչական ժողովը՝ այս ուրբաթ երեկոյեան ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ. բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է։

Ֆ. Կ. ԽԱՉԻ «Մանուկներու Օր»ուան տօնակատարութեան յանձնախումբի ժողովը այս երկուշաբթի ժամը չորսին Ռէժան սրճարանի վերնայարկը։ Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը երեքին, ընկերուհի Էօժէնի Փոթալեան բնակարանը՝ 21 Րիւ Թիւրպիկօ, Փարիզ (2), մէթրօ Էթիէն Մարսէլ։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերուհիներուն եւ մասնաւորաբար յանձնախումբին ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՀԱՄ. ԽԱՐԲԵՐԴ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղը ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները այս Շաբաթ, Պ. Սիմոնեանի սրճարանը։ Հայրենակիցներ, ժողովները մէկէ աւելի անդամներ յետաձգուած են փոքրամասնութեան պատճառով։ Այս վերջինը ինչ թիւ ալ որ կազմէ օրինաւոր պիտի նկատուի։

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։

### ՀԱՅԱԾԻՍ ՊԱՏԱՐԱԳ ՊԱՆԵՒՈՅԻ ՄԷՋ

Այս Կիրակի, երեկոյեան ժամը 4.45ին պիտի պատարագէ եւ քարոզէ Յովհաննէս Վ. Փարթամեան Ս. Ռընէ մատրան մէջ, 83 Ռիւ տ՚Արքէօյ։

Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

### ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԾՆՈՒՆԴԻՆ ԱՌԹԻւ

Այս Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս։

Կազմակերպութեամբ Պոմոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին կողմէ։

Գեղարուեստական բաժին, երգ, ար-տասանութիւն, հայկ. պարեր։

Կը ներկայացուի «ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ», խիստ քրքջալից կատակերգութիւն մը։

Պար՝ Օրքէսթր Անժ Քոլէքթա։

Անակնկալներ, քոթիյոն, զուարթ մթ-նոլորտ։

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Սամուէլ Մուրատեան վարժարանի կա-ղանդի Ծառի հանդէսը Դեկտեմբեր 21ին ժամը 16էն սկսեալ մինչեւ 22։

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Դաւիթեան, Տէր եւ Տիկին Գէորգ Դաւիթեան եւ զաւակը կը ծանու-ցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պի-տի կատարուի այս կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, ողբացեալ՝ ՄԿՐՏԻՉ ԴԱՒԻԹԵԱՆԻ մահ-ուան Գ. տարեդարձին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

### ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի Ահարոնեան խումբին, այս կիրա-կի ժամը 15էն 23, Ազգ. Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ։

Հաճելի մթնոլորտ։

Հասոյթը պիտի յատկացուի «Հայաս-տան» պարբերաթերթին։

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի Սէն-Շամոնի խումբին, Սալ ժան տ'Արք։

Գեղարուեստական եւ թատերական բաժին։

### ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՏՕՆԱԾԱՌԸ

Դեկտեմբեր 21ին
ժամը 15ին

### ՎԱԼԱՆՍԻ ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻ ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, ժամը 21էն մինչեւ առաւօտեան հինգը, Օթէլ տը լա Քրուա տ'Օր շքեղ սրահին մէջ։

Փլաս տը լա Ռէփիւպլիք

Առատ կերուխում եւ հաճելի անակըն-կալներ։

ORCHESTRE JOHANNES MERCIER-KERMANN

Կը հրաւիրուին Վալանսի եւ շրջանի բոլոր Հայերը անխտիր։

### ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի կողմէ Դեկտ. 23ին, ժամը 21ին, Իսիի Ալհամպրա սինեմային մէջ։ Կը ներկայացուի Շիրվանզադէի «ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ»ը

Միջնարարին տօնածառ եւ մրցանակա-բաշխութիւն Երեմեան դպրոցի աշակեր-տութեան։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը շաբաթ երեկոյեան Դեկտ. 20, ընկ. Սիմոնեանի բնակարանը։ Բո-լոր ընկերներու ներկայութիւնը պարտա-ւորիչ է։ Խիստ կարեւոր օրակարգ։

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ընկ. ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն ժամը 21ին, Երեմեան դպրոցը։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը։ Խիստ կարեւոր օրակարգ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ իրիկուն ժա-մը 8·30ին (Բաֆէ Լիոն) սրճարանին վերնայարկը։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւո-րիչ է։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խում-բի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, 17 րիւ Պլէօ։

ԼԻՈՆ.— Ֆր. Կապոյտ Խաչի վարչու-թիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բո-լոր ընկերուհիները, այս երկուշաբթի ժամը 16ին, Յոյներու սրահը Կարեւոր օրակարգ։

Ֆ. Կ. ԽԱՉԻ «Մանուկներու Օր»ուան տօնակատարութեան յանձնախումբի ժո-ղովը այս երկուշաբթի ժամը չորսին Ռէ-ժան սրճարանի վերնայարկը։ Կը խնդ-րուի ճշդապահ ըլլալ։

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը երեքին, ընկերուհի Լօժէնի Փո-թալեան բնակարանը՝ 21 Րիւ Թիւրպիկօ, Փարիզ (2), մէթրօ Էթիէն Մարսէլ։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկե-րուհիներուն եւ մասնաւորաբար յանձնա-խումբին ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՀԱՄ. ԽԱՐԲԵՐԴ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղը ժողովի կը հրա-ւիրէ իր բոլոր անդամները այս Շաբաթ, Պ. Սիմոնեանի սրճարանը։ Հայրենակից-ներ, ժողովները մէկէ աւելի անդամներ յետաձգուած են փոքրամասնութեան պատճառով։ Այս վերջինը ինչ թիւ ալ որ կազմէ օրինաւոր պիտի նկատուի։

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ։



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

Վիէնի Հ. Յ. Դ. Անի կոմիտէն ցաւով կը ծանուցանէ իր ընկերոջ՝
ԿԱՐԱՊԵՏ ՄՈՒՐԱՏԵԱՆԻ
յանկարծական մահը :
Յուղարկաւորութիւնը այս Երկուշաբթի ժամը 2ին :

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Սերաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի կողմէ Դեկտ. 23ին, ժամը 21ին, Իսիի Ալհամպրա սինեմային մէջ: Կը ներկայացուի Շիրվանզադէի
« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »ը
Միջնարարին տօնածառ եւ մրցանակաբաշխութիւն Երեմեան դպրոցի աշակերտութեան :

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ԾՆՈՒՆԴԻՆ ԱՌԹԻՒ

Այս Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս :

Կազմակերպութեամբ Պոմոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին կողմէ :

Գեղարուեստական բաժին, երգ, արտասանութիւն, հայկ. պարեր :
Կը ներկայացուի «ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ», խիստ քրքջալիր կատակերգութիւն մը :
Պար՝ Օրքէսթր Անժ Քոլէթթա :
Անակնկալներ, քոթիյոն, զուարթ մթնոլորտ :

## REVEILLON DE NOEL

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Առնուվիլի «Կառվարենց» մասնաճիւղին կողմէ :

Տեղի կ'ունենայ Դեկտեմբեր 24, Չորեքշաբթի ժամը 20,30էն մինչեւ առաւօտ՝ Փարիզի Հայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ :

Ընկերական խանդավառ մթնոլորտի մը մէջ անցուցէք տօնական այս օրը :

ԵՐԳ, ՊԱՐ, ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ, ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ

**COTILLONS**

Սրահին ջերմութիւնը ապահովուած է
Ճոխ պիւֆէ ...

ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵ՛Ր, ԴԵԿՏ. 24ԻՆ ԲՈԼՈՐԴ RUE BLEUE

## ՄԱՐՍԷՅԼ

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ
Կը ծանուցանէ թէ տարեկան իր
**ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ**
Տեղի պիտի ունենայ
31 Յունուար, Շաբաթ գիշեր,
Քլիւպի մէջ

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## 1959Ի "ԳՈՅԱՄԱՐՏ" ՕՐԱՑՈՅՑ - ԱԼՊՈՄԸ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԻ
ԸՆՏԻՐ ԹՈՒՂԹՈՎ 14 ՄԵԾԱԴԻՐ ԷՋԵՐ
Շքեղ նկարներ, մեծ մասը անտիպ : Գրական եւ պատմական նիւթերով ճոխ բովանդակութիւն
— ԳԵՂԱԶԱՐԴ ԵՒ ԳՈՒՆԱՒՈՐ ԿՈՂՔ —
Բացառիկ խնամքով եւ ճաշակով պատրաստուած այս օրացոյց-ալպոմը պիտի կազմէ զարդը՝ ամէն հայ տան :
ԳԻՆ 500 ՖՐԱՆՔ
Այժմէն ապահովեցէք ձեր օրինակը
Փարիզի համար դիմել՝ LIBRAIRIE H. SAMUELIAN, 51, Rue Monsieur-le-Prince, PARIS - 6e

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ Կիրակի, 28 Դեկտեմբեր, ժամը 16-24
Hôtel Lutétiaի մեծ սրահին մէջ

Ճոխ պիւֆէ ORCHESTRE JEUNESSE

Պիտի նուագէ նաեւ հայկ. նոր թանկօներ Չոր կ երգէ Պ. ԼԵՒՈՆ ՄՈՄՃԵԱՆ
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԳԵՂԵՑԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ՝
ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ երգի ծանօթ քառեակը :
Կը պարեն՝ Օր. Օր. Քէօշկէրեան եւ Դանիէլեան :
Կ'երգեն՝ Տիկին Շ. Գալայճեան եւ Օր. Միշլին Մարուքեան՝ կիթառով :
Զուարթ մենախօսութիւն՝ ուսանողուհի Օր. Է. Աբգարեանի կողմէ :
Մուտք՝ 500 ֆրանք, ուսանողներուն՝ 300 ֆրանք :
Ծանօթ.— Կը խնդրուի այժմէն ապահովել սեղանները, հեռախօսելով՝ Կիւթէնպէրկ 24-38 եւ կամ՝ Տօմէնիլ՝ 13-27 : Մինչեւ ժամը 19ը չեկողներուն սեղաններուն պատասխանատուութիւնը չստանձներ յանձնախումբը :



## ՎԱԼԱՆՍԻ ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻ ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, ժամը 21էն մինչեւ առաւօտեան հինգը, Օթէլ տը լա Բրուա տ'Օր շքեղ սրահին մէջ :
Փլաս տը լա Ռէփիւպլիք
Առատ կերուխում եւ հաճելի անակնկալներ :
ORCHESTRE JOHANNES MERCIER-KERMANN
Կը հրաւիրուին Վալանսի եւ շրջանի բոլոր Հայերը անխտիր :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պուրժ. Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ թաղականութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները հանգուցեալ Զ. Բէնտիրեանի մահուան քառասունքի առթիւ : Այրի Տիկին Զարդիկ Բէնտիրեան, Տէր եւ Տիկին Յ. Արզումանեան, Պ. Լ. Արզումանեան հազարական ֆրանք, եկեղեցւոյ պայծառութեան համար : Տէր եւ Տիկին Խ. Արզումանեան հազար ֆր « Յառաջ »ի տարածման եւ հազար ֆրանք Մշակութային Տան Շ. Միսաքեանի սրահին :

Պ. Ղազարոս Բէշիշեան, հանգուցեալ Տ. Ստեփանեանի մահուան եօթներորդ տարելիցի առթիւ հազար ֆր. եւ հինգ հարիւր ֆր. Պ. Վ. Ստեփանեանի ամուսնութեան առթիւ եկեղեցւոյ :

Պ. Ս. Խոզիկեան իր թոռնիկի մկրտութեան առթիւ հինգ հարիւր ֆր. կը նուիրէ եկեղեցւոյ :

## ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Հինգշաբթի առաւօտ Ծննդեան տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի Ռիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ :
Պիտի պատարագէ Թորգոմ քհնյ. :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Տիկին Քաղալիս, ծնեալ Եկաւեան կը փնտռէ իր հօրը Միսաք Եկաւեանի ազգականները : Միսաք Եկաւեան բնիկ Արաբկիրցի, հօր անունը Յակոբ, մօրը Մարթա Գարակիւլեան, ծնած է 1880ին, ըսպաննուած Սոմի ճակատամարտին (1915 Մայիսին) ֆրանսական բանակի շարքերուն մէջ : Տեղեկացնել Յառաջի :

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս երկուշաբթի երեկոյեան ժամը 21ին, 17 րիւ Պլէօ :

ԼԻՈՆ.— Ֆր. Կապոյտ Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները, այս երկուշաբթի ժամը 16ին, Յոյներու սրահը Կարեւոր օրակարգ :

Ֆ. Կ. ԽԱՉԻ «Մանուկներու Օր»ուան տօնակատարութեան յանձնախումբի ժողովը այս երկուշաբթի ժամը չորսին Ռէժան սրճարանի վերնայարկը : Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :




Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՅԱԻԱԿՑՈՒԹԻՒՆ

Համախարբերդցիական Միութեան Լիոնի մասնաճիւղը իր ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Եղսուլ Սէֆէրի, իրենց մօր մահուան առթիւ :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Լեւոն Մողեանի մահուան առթիւ Տէր եւ Տիկին Արամ Պասմաճեան երկու հազար ֆրանք կը նուիրեն Այանեան սաներու ֆոնտին (Պէյրութ) եւ երկու հազար ֆրանք Սեւրի Մուրատեան վարժարանին : (Ստանալ «Յառաջ»էն) :

×

Որբ. Լեւոն Մողեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի, Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն ի նպաստ կը նուիրեն.— Տէր եւ Տիկին Բարսեղ Տամլամեան, Տէր եւ Տիկին Վահրամ Մոստիչեան, Տէր եւ Տիկին Արամ Տարօնեան, Տէր եւ Տիկին Վահէ Տամլամեան հազարական ֆրանք :

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
## ԾՆՈՒՆԴԻՆ ԱՌԹԻՒ

Այս Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս :

Կազմակերպութեամբ Պոմոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին կողմէ :

Գեղարուեստական բաժին, երգ, արտասանութիւն, հայկ. պարեր :

Կը ներկայացուի «ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ», խիստ զուարճալի կատակերգութիւն մը :

Պար՝ Օրքէսթր Անժ Քոլէթթա :

Անակնկալներ, քոթիլյոն, զուարթ մթնոլորտ :

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Սէն Ֆոնսէն Տէր եւ Տիկին Գամպէրեան այս տարի եւս մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրեն իրենց հօր Պ. Գ. Խողեանի, Մարսէյլ :

## ՎԱԼԱՆՍԻ ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻ
## ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, ժամը 21էն մինչեւ առաւօտեան հինգը, Օթէլ տը լա Փոսթ տ'Օր շքեղ սրահին մէջ :

Փլաս տը լա Ռեփիւպլիք

Առատ կերուխում եւ հաճելի անակընկալներ :

ORCHESTRE JOHANNES MERCIER-KERMANN

Կը հրաւիրուին Վալանսի եւ շրջանի բոլոր Հայերը անխտիր :

## ՏՕՆԱԾԱՌ

Ալֆորվիլի Հայկ. դպրոցի, կիրակի ժամը չորսին Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ սրահին մէջ :

## ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Հինգշաբթի առաւօտ Ծննդեան տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի Ռիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ :

Պիտի պատարագէ Թորգոմ քհնյ. :

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Փոն տը Շէրիւի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս հինգշաբթի առաւօտեան ժամը 9ին ; Պիտի պատարագէ Լիոնէն Տէր Վռամշապուհ քհնյ. Գաբիկեանը, դպրապետութեամբ Գ. Մարտիրոսեանի :

Այս առթիւ կը հրաւիրենք մեր բոլոր հայրենակիցները :

## ՎԱՐՁՈՒ ՍԵՆԵԱԿ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայ ուսանող մը սենեակ կը փնտռէ հայ ընտանիքի մը մօտ : Դիմել գրասուն Հրանտ Սամուէլեան, 51 Րիւ Մօսիէ լը Փրէնս, Փարիզ (6) : Հեռ. Տանթօն 88–65 :

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ «Յառաջ» խումբին ընկերներն ու ընկերուհիները այս Շաբաթ, ժամը 21–ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ : Պարտաւորիչ ներկայութիւն : Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչ :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ցակոբ Առաքելեանը կը ծանուցանէ թէ այս կիրակի առաւօտեան ժամը 11ին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին մէջ իր կենակցին Տիկ. Տարհինայի մահուան քառասունքին եւ քանդակագործ Ցախոր Գիւրջեանի մահուան 10ամեակին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները :

## ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի կողմէ Դեկտ. 23ին, ժամը 21ին, Իսի Ալհամպրա սինեմային մէջ : Կը ներկայացուի Շիրվանզադէի

« ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ »Ը

Միջնարարին տօնածառ եւ մրցանակաբաշխութիւն Խրիմեան դպրոցի աշակերտութեան :

Մուտք 300 փրանք :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Ցունաստանէն հայրենադարձ Եղիսաբէթ Սրապեանը կը փնտռէ իր որդին Լեւոն Սրապեան, հօր անունը Ցարութիւն, ծնած է Աքշէհիր, 1928ին Ցունաստանէն եկած է Ֆրանսա : Կ'ենթադրուի Մարսէյլի մօտ Լարոս քաղաքը գտնուիլ : Տեղեկացնել Ե. Ժամկոչեանի, 150 Րիւ տը Շարթր, Քոլոմպ, Սէն :











**Imprimé sur les presses du journal HARATCH**
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## "ՕՐԵՐ ԵՒ ԺԱՄԵՐ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

*ՕՐԵՐ ԵՒ ԺԱՄԵՐ կը նուիրէ Տաքարէն՝ Պ. Մ. Առաքելեան, Պ. Ժիրայր Ալթունեանին (Ալֆորվիլ), եւ Պ. Յովհ. Գրիգորեան՝ Պ. Հրանդ Յակոբեանին (Ալֆորվիլ):*

*Պ. Առաքելեան երկու հազար ֆրանք ալ կը նուիրէ Մշակոյթի Տան իր հայրենակցին Մկրտիչ Դերձակեանի յիշատակին:*

*(Ստանալ «Յառաջ»էն):*

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Կրենոպլի Կապ. Խաչը՝ իր խորին վշտակցութիւնները կը յայտնէ Պ. Վ. Բարախեանի, իր մօր մահուան տխուր առիթով:*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

*Այսօր Չորեքշաբթի, Ճրագալոյց Ծննդեան, ժամը 17ին ժամերգութիւն, ժամը 18ին ձայնաւոր պատարագ եւ նախատօնակ:*

*Վաղը Հինգշաբթի, Տօն Ծննդեան: Ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ ժամը 10ին:*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Կապոյտ Խաչի Վալանսի մասնաճիւղի տօնական խնջոյքը Յունուար 11ին, Կիրակի կէսօրէ վերջ, «Ահարոնեան» ակումբին մէջ: Մանրամասնութիւնները յաջորդիւ:*

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԾՆՈՒՆԴԻՆ ԱՌԹԻՒ

*Այս Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, երեկոյեան ժամը 9էն մինչեւ լոյս:*

*Կազմակերպութեամբ Պոմոնի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Քրիստափոր» խումբին կողմէ:*

*Գեղարուեստական բաժին, երգ, արտասանութիւն, հայկ. պարեր:*

*Կը ներկայացուի «ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ», խիստ քրքջալիր կատակերգութիւն մը:*

*Պար՝* Օրքէսթր Անժ Քոլէթթա:

*Անակնկալներ, քոթիյոն, զուարթ մթնոլորտ:*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Կրենոպլի Կապ. Խաչի վարչութիւնը՝ շնորհակալութեամբ ստացած է Տիկ. Իսկուհի Արապեանէ հազար ֆր., ի նպաստ իր գործոյն:*

×

*Կապոյտ Խաչի Վալանսի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Գ. Մինասեանէ, իրենց հօր եւ աներհօր մահուան առթիւ:*

×

*ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Տէր եւ Տիկին Վ. Խըրիմեան եւ զաւակները մասնաւոր շնորհակալութիւն կը յայտնեն Հ. Յ. Դ. «Անտոք» կոմիտէին, Հ. Յ. Դ. Սէն Շամոնի «Վարուժան» կոմիտէին, ինչպէս նաեւ բոլոր անոնց, որոնք անձամբ, մամուլով եւ նամակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրեցեալ եղբօրորդւոյն տարաբախտ* Ժիրայր Խրիմեանի *տխուր մահուան առթիւ, որ Պէյրութի մէջ անմեղօրէն զոհ գնաց:*

## ՎԱԼԱՆՍԻ ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻ ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Չորեքշաբթի, 24 Դեկտեմբեր, ժամը 21էն մինչեւ առաւօտեան հինգը, *Օթէլ տը լա Բրոսս տ'Օր* շքեղ սրահին մէջ:

Փլաս տը լա Ռէփիւպլիք

*Առատ կերուխում եւ հաճելի անակնկալներ:*

ORCHESTRE JOHANNES MERCIER-KERMANN

*Կը հրաւիրուին Վալանսի եւ շրջանի բոլոր Հայերը անխտիր:*

## ՏՕՆԱԾԱՌ

*Ալֆորվիլի Հայկ. դպրոցի, կիրակի ժամը չորսին Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ սրահին մէջ:*

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Հայ Կարմիր Խաչի տարեկան ցերեկոյթ-պարահանդէսը,* 1 Փետր. 1959:

*Կիրակի, ժամը 15 – 24, Լէ գ'Ամպասատէօր, 3 Ավընիւ Կապրիէլ, Շան զ'Էլիզէ:*

*Պատրաստուեցէք այժմէն ապահովել սեղանները հեռաձայնելով* Էլիզէ 67-03:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ Հինգշաբթի օր կը կատարուի Ս. Ստեփանոսի տօնը, սպասաւորակիր սարկաւագներու գլխաւորութեամբ յատուկ արարողութեամբ: Կը մատուցուի հանդիսաւոր Ս. Պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով: Մասնաւոր հոգեհանգիստ կը կատարուի եկեղեցիին հանգուցեալ դպիրներուն եւ երգեցիկ խումբի ննջեցեալներուն յիշատակին:*

## ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

*Փոն տը Շէրիւի Ս. Գրիգոր Լուսաւորիչ մատրան մէջ հանդիսաւոր պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Հինգշաբթի առաւօտեան ժամը 9ին: Պիտի պատարագէ Լիոնէն Տէր Վռամշապուհ քհնյ. Գարիպեանը, դպրապետութեամբ Գ. Մարտիրոսեանի:*

*Այս առթիւ կը հրաւիրենք մեր բոլոր հայրենակիցները:*

## ԹՈՒՇԱՏԵՏՐ

*ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ «Յառաջ» խումբին ընկերներն ու ընկերուհիները այս Շաբաթ, ժամը 21-ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը:*

*ԿՐԸՆՈՊԼ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 9ին, դպրոցի սրահին մէջ, ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

*ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէին [illegible] ընդհ. ընկերական ժողովին կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ, ժամը 21ին, ակումբին մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

## ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

*Այս Հինգշաբթի առաւօտ Ծննդեան տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի Ռիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ:*

*Պիտի պատարագէ* Թորգոմ քհնյ.:

## « ԱՄԷՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ » ԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

*Ամէն տարի, ամանորին այս օրերուն, հրատարակուած եւ մինչեւ հեռաւոր գաղութները հասած կ'ըլլար «Ամէնուն Տարեգիրքի» հերթական հատորը: Այս տարի, դժբախտաբար, կարելի չեղաւ իրականացնել հրատարակութիւնը իր ժամանակին, Լիբանանի մէջ պայթած եւ ամիսներով շարունակուած ըմբոստութեան հետեւանքով:*

*Այժմ, ի գիտութիւն Տարեգրքի ընթերցողներուն կը հաղորդուի, թէ 1959ի հատորը կը գտնուի արդէն մամուլի տակ եւ Պէյրութի մէջ լոյս կը տեսնէ յառաջիկայ Մարտի ընթացքին, իր սովորական ձեւի բովանդակութեամբ եւ բազմապիսի նորութիւններով: Հեռաւոր գաղութներու ընթերցողներն ալ կ'ունենան զայն իրենց տրամադրութեան տակ մինչեւ Ապրիլի վերջերը:*

*Տարեգրքի բարեկամները թող ներողամիտ գտնուին բոլորովին ակամայ ու բացառիկ այս յապաղումին համար:*

ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆ













Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## "ՕՐԵՐ ԵՒ ԺԱՄԵՐ" ԵՒ "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

### ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Գորտոյէն ընկեր Կ. Տօնէրեան «Օրեր եւ ժամեր» կը նուիրէ Ալէյրոնէն Գ. Բեւրուլեանի :

× «Յառաջ» կը նուիրեն Վիլէօրպանէն Գ. Մուրատեան մէկ տարեկան «Յառաջ» այս տարի եւս, Տիտրոյթ իր հօրեղբօր Գ. Մուրատեանի :

Տիկին Պալտասարեան իր մօրը Տիկին Բէշիշեանի (Մոնֆերան) :

Օր. Աշճեան (Բոլոմպէն) Տիկին Պալտասարեանի (Բանատա) :

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Վալանսի մասնաճիւղը Բժ. Բիւթիւքեանի մահուան առթիւ կը նուիրէ երեք հազար ֆրանք Կապոյտ Խաչի կայանին : Տէր եւ Տիկին Յ. Կօչկա-կարեան Սուրբ Յակոբի տօնի առթիւ կը նուիրեն երկու հազար ֆրանք Կապոյտ Խաչի կայանին :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Գ. Գ. Կլեմէս եւ Գրիգոր Տալըրեան եղբայրները եւ բոլոր ընտանիկան պարագաները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր ընկերներուն, բարեկամներուն, հայրենակիցներուն որոնք անձամբ, ծաղկեպսակով, կամ փոխան ծաղկեպսակի նուիրատուութիւններով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի մօր եւ պզպականին՝ Այրի Տիկ. Մարի Տալըրեանի (Աթանօզցի) մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 9 Դեկտ. 1958, Երեքշաբթի իր բնակարանին մէջ, Իսի :

Թաղումը կատարուեցաւ 11 Դեկտ. 1958, Հինգշաբթի Իսիի գերեզմանատունը :

×

Կապ. Խաչի Տէսինի Ազգային վարժարանի Կրթ. մարմինս շնորհակալութեամբ ստացած է երեք հազար ֆր. Գ. Ռոպէր Մոնղէրեանէ (կնքահայր), Գ. Ժան Գասպարեանի եւ Օր. Մարգրիտ Ուստեանի ամուսնութեան առթիւ :

Ալաջեան ընտանիքը ցաւով կը ծանուցանէ՝

ՍԱՆԹԻԿ ԱՂԱՋԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր 23ին : Յուղարկաւորութիւնը այս Շաբաթ առաւօտ ժամը 10.30ին Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցին :

Մանրամասնութիւնները Ուրբաթի թիւով :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Նիկոմիտիոյ, Բիւթանիոյ եւ շրջաններու խումբ մը հայրենակիցներու խնդրանքով յառաջիկայ Կիրակի 28 Դեկտ. Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պատարագի ընթացքին պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն, Նիկոմիտիոյ բազմավաստակ առաջնորդ Տէր Ստեփանոս Արք. Յովակիմեանի հոգւոյ հանգստեան :

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները, յարգելու համար այս հանրանուէր հոգեւորականի խնկելի յիշատակը :

### ՏՕՆԱԾԱՌ

Ալֆորվիլի Հայկ. դպրոցի, կիրակի ժամը չորսին Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ սրահին մէջ :

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ մէջ, այս Կիրակի Ս. Պօղոս – Պետրոս անուան տօնախմբութեան առթիւ Ս. պատարագ կը մատուցուի եւ կը քարոզէ Հայրապետական Պատուիրակ Գեր. Սերովբէ եպիսկ. Մանուկեան :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը :

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

Պոմոնի Ս. Գ. Լուս. եկեղեցւոյ, Նոր Տարուան եւ Ս. Ծննդեան արարողութեանց :

28 Դեկտեմբեր, Կիրակի, Տօն Սրբոյն Ստեփանոսի նախասարկաւագին, տօնախմբութիւն Սարկաւագաց եւ Դպրաց. — Առաւօտեան ժամերգութիւնք 8.30ին, Հանդիսաւոր Ս. պատարագ տասնին :

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ Կիրակի, 28 Դեկտեմբեր, ժամը 16–24

**Hôtel Lutétia**ի մեծ սրահին մէջ

Ճոխ պիւֆէ

ORCHESTRE JEUNESSE

Պիտի նուագէ նաեւ հայկ. նոր քանկօներ Ջոր կ երգէ Գ. ԼԵՒՈՆ ՄՈՄՃԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԳԵՂԵՑԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ՝

ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ երգի ծանօթ քառեակը :

Կը պարեն՝ Օր. Օր. Քէօշկէրեան եւ Դանիէլեան :

Կ'երգեն՝ Տիկին Շ. Գալայճեան եւ Օր. Միշլին Մարուքեան՝ կիթառով :

Ջութակի մենախօսութիւն՝ ուսանողուհի Օր. Է. Աբգարեանի կողմէ :

Մուտք՝ 500 ֆրանք, ուսանողներուն՝ 300 ֆրանք :

Ծանօթ. — Կը խնդրուի այժմէն ապահովել սեղանները, հեռախօսելով՝ Կիւթէնպէրկ 24–38 եւ կամ՝ Տօմէնիլ՝ 13–27 : Մինչեւ ժամը 19ը չեկողներուն սեղաններուն պատասխանատուութիւնը չստանձներ յանձնախումբը :

### ՆՈՒԷՐ

Միհրան Ֆերատեանի մահուան առթիւ Սէրճանեան եւ Արապեան ընտանիքները փոխան ծաղկեպսակի 2500 ֆր. Կապ. Խաչին, 2500 «Յառաջ»ի բարգաւաճման, հազար ֆրանք ալ Կ. Խաչի մանուկներու տօնածառին կը նուիրեն :

Ստանալ «Յառաջ»էն :

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Սէնթ Անթուան, Գ. Մարտիկեանի սրահին մէջ, այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, մասնակցութեամբ Հայոց դպրոցի երկսեռ աշակերտութեան եւ կարող ուժերու, ղեկավարութեամբ՝ դերասան – ուսուցիչ Թրազօշի : Կը ներկայացուի՝

ՍՕՍ եւ ՎԱՐԴԻԹԵՐ

Բազմաթիւ երգերով ու բազմապիսի հայկական պարերով, ընկերակցութեամբ ծանօթ ջութակահար Ս. Ձէօրէքճեանի :

### ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ

Ս. Ստեփանոսի տօնին առթիւ, 28 Դեկտեմբեր, Կիրակի առաւօտ, Լիոնի Ազգ. Միութեան փափաքին համաձայն, հոգեհանգստեան Ս. պատարագ պիտի մատուցուի Լիոնի եկեղեցին ի յիշատակ Նիկոմիդիոյ Թեմին երջանկայիշատակ շնորհ առաջնորդ Ստեփանոս արք. Յովակիմեանի : Կը հրաւիրուին բոլոր իր յիշատակը յարգող Հայերը :





Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Կեդր. Կրթ. մարմինը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.

Փոքրիկներ Էտի եւ Արիս Տամլամեան կը նուիրեն փոխան ծաղկեպսակի հինգ հազար ֆրանք իրենց սիրեցեալ մեծ հօրոյր. Լեւոն Մօղեանի մահուան առթիւ :

Գ. Հայկ Գըրբքճեան քսան հազար ֆր. եկեղեցւոյ պայծառացման եւ դպրոցներու : Տիկին Աշճեան Պանեոլէ երկու հազար ֆր. Լիլա – Պէլվիլի դպրոցին :

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ «Յառաջ» խումբին ընկերներն ու ընկերուհիները այս Շաբաթ, ժամը 21–ին, սովորական հաւաքատեղին : Կարեւոր օրակարգ : Պարտաւորիչ ներկայութիւն : Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը :

ԿՐԸՆՈԲԼԸ. — Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 9ին, դպրոցի սրահին մէջ, ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՎԻԷՆ. — Հ. Յ. Դ. Անի կոմիտէն շաբաթ – տխրողաբար ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին, ակումբին մէջ : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՇԱՒԻԼ. — Հ. Յ. Դ. «Արցութեան» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին, ժամը 21ին : Խիստ կարեւոր օրակարգ : Բացականները նկատի կ'առնուին :

ՊԱՆԵԼՕ – ՔԱՇԱՆԻ Ֆ. Կ. Խաչի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 3.30ին, Տիկին Փափազեանի բնակարանը : Բոլորի ներկայութիւնը անհրաժեշտ է :

Այրի Տիկին Զուարթ Աղաջեան, Պ. Յակոբ Աղաջեան, Օրիորդներ Արշակուհի, Ալանի եւ Ֆլօրա Աղաջեան, Այրի Տիկին Սիրանոյշ Քէօսէեան, Տէր եւ Տիկ. Կարպիս Քէօսեան, Տէր եւ Տիկին Յարութիւն Բապուճեան եւ զաւակը (Հայաստան), Տէր եւ Տիկին Յովհաննէս Տօպրուեան եւ զաւակները (Հայաստան), Այրի Տիկին Մարիամ Աստուրեան եւ զաւակները (Յունաստան), Այրի Տիկին Մէնէնթէլ Թապուրեան եւ զաւակները (Յունաստան), Պ. Օհանիկ Զօլաքեան եւ զաւակը, Այրի Տիկին Թէլլ Մէօլէօզեան, Տիկին Գոհար Չէննէեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Պէքուրեան եւ Բապուճեան գերդաստանի բոլոր պարագաները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մօրեղբօր, քեռայրին եւ ազգականին՝

ՍԱՆԹԻԿ ԱՂԱՋԵԱՆԻ
(Զէնկիլէրցի)

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ Դեկտ. 23ին, 75 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը այս Շաբաթ առաւօտ ժամը 10·30ին Ալֆորվիլի Ս. Պօղոս-Պետրոս եկեղեցին:

Ուրկէ մարմինը պիտի ամփոփուի տեղւոյն գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայիս իբր այդ նկատել:

Այրի Տիկին Տիգրանուհի Սապոնճեան, Տէր եւ Տիկին Սարգիս Սապոնճեան եւ զաւակը Լինտա, Տէր եւ Տիկին Շաւարշ Գալէնտէրեան եւ զաւակները Արամիկ եւ Ֆիլիփ, Այրի Տիկին Եափուճեան եւ զաւակները, Այրի Տիկին Նարդուհի Տրնկոյեան եւ զաւակները, փեսաները եւ թոռները, ինչպէս նաեւ Մ. Գալէնտէրեան, Գափուքճեան, Կ. Յակոբեան, Այրի Տիկին Յ. Էլիզեան ընտանիքները եւ բոլոր պարագաները ցաւով կը ծանուցանեն՝ իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, փեսային, խնամիին եւ ազգականին՝

ՅԱՐՈՒԹԻՒՆ ՍԱՊՈՆՃԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ 24 Դեկտեմբեր, Թրնոնի հիւանդանոցին մէջ, 71 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի երկուշաբթի Դեկտ. 29, ժամը 14·15ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սամուէլ Մուրատեան վարժարանի ծնողաց միութիւնը կը յայտնէ իր խորին շնորհակալութիւնները բոլոր անոնց որոնք իրենց մասնակցութիւնը բերին նիւթապէս թէ բարոյապէս իրենց տօնածառի հանդէսին:

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ Կիրակի, 28 Դեկտեմբեր, ժամը 16–24

Hôtel Lutétiaի մեծ սրահին մէջ

Ճոխ պիւֆէ

ORCHESTRE JEUNESSE

Պիտի նուագէ նաեւ հայկ. նոր թանկօներ Ջոր կ երգէ Պ. ԼԵՒՈՆ ՄՈՄՃԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԳԵՂԵՑԻԿ ՅԱՅՏԱԳԻՐ՝

ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ երգի ծանօթ քառեակը:

Կը պարեն՝ Օր. Օր. Քէօշկէրեան եւ Դանիէլեան:

Կ'երգեն՝ Տիկին Շ. Գալայճեան եւ Օր. Միշլին Մարուքեան՝ կիթառով:

Զուարթ մենախօսութիւն՝ ուսանողուհի Օր. Է. Աբգարեանի կողմէ:

Մուտք՝ 500 ֆրանք, ուսանողներուն՝ 300 ֆրանք:

Ծանօթ.— Կը խնդրուի այժմէն ապահովել սեղանները, հեռախօսելով՝ Կիւթէնպէրկ 24–38 եւ կամ՝ Տօմէնիլ՝ 13–27: Մինչեւ ժամը 19ը չեկողներուն սեղաններուն պատասխանատուութիւնը չստանձներ յանձնախումբը:

### ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Հրանդ Սեդա Գիւրճեան նորոգ հանգուցեալ Պ. Միհրան Ֆէրատեանի յիշատակին հազար ֆրանք կը նուիրեն Ֆ. Կ. Խաչի օգափ. կայանին:

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Նորհատեան եւ զաւակները Պօղոս, Գէորգ, Յակոբ, Տէր եւ Տիկին Ադամեան, Տէր եւ Տիկին Քարաարթինեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Քիւլհանճեան (Վիէն) ընտանիքները կը ծանուցանեն թէ այս Կիրակի ժամը 10ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ հոգեհանգիստի պաշտօն պիտի կատարուի իրենց զաւկին, եղբօր, քրոջորդուն՝

ՓԻԼԻՓ ՆՈՐՀԱՏԵԱՆԻ

կսկծալի մահուան տարելիցին առթիւ (ինկած Ալժերիա):

Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

Այս առթիւ կը նուիրեն երկու հազար ֆրանք Փարիզի հանգստեան տուներուն եւ հազար ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման: (Ստացանք «Յառաջ»էն):

×

Նիկոմիտիոյ, Բիւթանիոյ եւ շրջաններու խումբ մը հայրենակիցներու խնդրանքով յառաջիկայ Կիրակի 28 Դեկտ. Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պատարագի ընթացքին պիտի կատարուի հոգեհանգստեան պաշտօն, Նիկոմիտիոյ բազմավաստակ առաջնորդ Տէր Ստեփանոս Արք. Յովակիմեանի հոգւոյ հանգստեան:

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները, յարգելու համար այս հանրանուէր հոգեւորականի խնկելի յիշատակը:

×

Յակոբ Առաքելեանը կը ծանուցանէ թէ այս Կիրակի առաւօտեան ժամը 11ին հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ իր կենոջ Տիկ. ՏԱՏԻԱՆԱՅԻ մահուան քառասունքին եւ քանդակագործ Յակոբ Գիւրջեանի մահուան 10ամեակին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ «Յառաջ» խումբին ընկերներն ու ընկերուհիները այս Շաբաթ, ժամը 21–ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 9ին, ղպրոցի սրահին մէջ, ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՇԱԽԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին, ժամը 21ին: Խիստ կարեւոր օրակարգ: Բացականները նկատի կ'առնուին:

ՊԱՆԵԽՕ – ՔԱՇԱՆԻ Ֆ. Կ. Խաչի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 3·30ին, Տիկին Փափազեանի բնակարանը: Բոլորի ներկայութիւնը անհրաժեշտ է:

### ՏՕՆԱԾԱՌ

Ալֆորվիլի Հայկ. դպրոցի, կիրակի ժամը չորսին Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ սրահին մէջ:

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Օգնական կտրող (էտ – ֆուփէօզ) օրիորդ մը, որակեալ կանանց քոնֆէքսիոնի աշխատանոցի մը համար: Ներկայանալ վկայականներով եւ յանձնարարութիւններով (րեֆերանս): Դիմել՝

Ets. D. L. S.

27, RUE POISSSONNIÈRE GUT. 60-03

ՎԻԷՆԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Վիէնի մասնաճիւղի տարեկան մեծ պարահանդէսը տեղի կ'ունենայ այս չորսաթ, Դեկտեմբեր 27, ժամը 9էն մինչեւ ուշ գիշեր՝ Սալ տէ Ֆէթի մէջ:

Գեղարուեստական բաժնին իր մասնակցութիւնը կը բերէ Ժան Մաս (Լիոնէն), որ պիտի երգէ հայերէն երգեր:

Կը հրաւիրուին բոլոր ծնողքները:

Մուտք՝ 400 ֆրանք:



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

եւ տնտեսական կացութիւնը եւ ձեռք առնուած միջոցները:

### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿԱՐԾԻՔԸ

Ընդհանուր ձեւով ֆրանքին արժեզրկումը լաւ ընդունելութիւն գտաւ արտասահման: Պոնի մէջ կը մտածեն նաեւ փոխատուութիւն մը ընել Ֆրանսայի թոյլ տալու համար որ դիմադրաւէ բոլոր դժուարութեանց որ ծնունդ առին վճարումներու Եւրոպան Միութեան լուծումէն ետք:

Ֆրանքֆուրթըր Ալկըմայնէն կը գրէ թէ Արեւմտեան Գերմանիան հաւանաբար 300 միլիոն մարքի օժանդակութիւն մը ընէ Ֆրանսայի: Լոնտոն իր կարգին գոհունակութիւնը կը յայտնէ Ֆրանսայի կատարած բարեփոխումէն եւ ապացոյցը կը տեսնէ Ֆրանսայի մեծութեան, մինչ Մոսկուայի ձայնասփիւռը արժեզրկման լուրը տուած է առանց ոչ մէկ մեկնութեան:

Նիւ-Եորքի մէջ կը մտածեն թէ շատոնց պէտք է կատարուած ըլլար այս բարեփոխումը: Իտալիոյ մէջ մեծ կարեւորութիւն կը տրուի ֆրանքի արժեզրկման եւ ծանրակշիռ կը նկատուի բայց Մեսաճճեռօ կը գրէ թէ պէտք չէ ծանրացընել խնդիրը մինչ քօթիտիանօ կը շեշտէ թէ Գերմանիան պիտի օգնէ Տը Կոլին եւ պիտի ըլլայ Ֆրանսայի եւրոպական յենարանը:

### ՆՈՐ ՍԱԿԵՐ

Ֆրանքին արժեզրկումէն ետք, Դեկտեմբեր 29ին Տոլլիգներու նոր սակը հետեւեալն է.— Տոլար 493–70, սթերլին 1382,–36, ֆլորէն 130, մարք 117·54, շուէտական քուրոն 95·30, նորվեկեան քուրոն 64·34, պելժիական 9·87, լիր 0·78, դանիական քուրոն 0·71, զուիցերիական 112·9:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն, Ց. Կ. Խաչը, Հ. Յ. Դ. Նոր Սերունդի մարմինները, ընկերներն ու ընկերուհիները, իրենց խորին ցաւակցութիւնները կը յայտնեն ընկերուհի Ալթուն Մուրատեանի եւ իր զաւակներուն Լեւոն եւ Նշան Մուրատեաններուն եւ իրենց ընտանեկան պարագաներուն իրենց սիրելի ամուսնոյն եւ հօր տխուր մահուան առթիւ:

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Համա–Զարանձալի Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղի ընտանեկան խնջոյքը Նոր տարուան առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երկուքին, Յոյներուն սրահը, 5 Րիւ Պօնըֆուա:

Գեղարուեստական բաժին.— Հայկական եւ եւրոպական պար եւ զուարճալի անակնկալներ, առատ կեր ու խում, հաճելի ժամանց:

Այս առթիւ սիրով կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի Զարանձացիները եւ հայ հասարակութիւնը անխտիր:

Մուտքը ազատ է:



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Վիէնի Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութիւն կը յայտնէ Պ. Ա. Զաքարեանի որ իր կնոջ ընկերուհի Նազիկի գործողութենէն յաջող ապաքինելուն առթիւ երկու հազար ֆրանք կը նուիրէ Կ. Խաչի դպրոցներուն, շուտափոյթ ապաքինում կը մաղթենք:

### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՓԱՐԻԶԻ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՊԱՇՏԱՄՈՒՆՔՆԵՐՈՒ

Յունուար 1, Հինգշաբթի, Նոր Տարուոյ առթիւ Ս. պատարագ ժամը 10ին:

Յունուար 4 Կիրակի, Ս. պատարագ ժամը տասնին, յետ պատարագի դպրաց դասու ընդունելութիւն խորհրդարանին մէջ Ս. Ստեփանոսի տօնին առթիւ եւ ուրարակիր–կիսասարկաւագներու վկայականներու բաշխում:

Յունուար 5, Երկուշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան երեկոյեան սկիզբն. ժամերգութեան ժամը 15·30ին բազմաձայն Ս. պատարագ ժամը 17ին:

Յունուար 6, Երեքշաբթի, Տօն Ս. Ծընընդեան, ժամը ութին, բազմաձայն Ս. պատարագ ժամը տասնին, Ջրօրհնէք ժամը 12ին, կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Սերովբէ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:

Յունուար 7, Չորեքշաբթի, Բ. օր Ս. Ծննդեան, յիշատակ Մեռելոց Ս. պատարագ ժամը տասնին:

### ՏՕՆԱԾԱՌ

Վիէնի Ց. Կ. Խ. մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Սէրքըլ Կաթոլիքի սրահին մէջ, Կ. Խաչի երեք դպրոցներու աշակերտներուն կողմէ երգ, արտասանութիւն, մանկական փիէս մը երեք արար: Կաղանդ Պապան փոքրիկներուն պիտի այցելէ նուէրներով բեռնաւորուած կը մնայ հայրենակիցներուն այդ օրը իրենց ներկայութեամբ քաջալերել մեր փոքրիկները:

### ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

Այս Հինգշաբթի Կաղանդ եւ Տարեմուտ 1959 թուին Քրիստոսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց 8·30, Գոհաբանական Ս. պատարագ տասնին:

5 Յունուար Երկուշաբթի, Ճրագալոյց Ծննդեան, սկիզբ երեկոյեան արարողութեանց ժամը 3·30ին, Ս. պատարագ եւ Նախատօնակ 4·30ին:

6 Յունուար Երեքշաբթի, Ծնունդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, սկիզբ առաւօտեան արարողութեանց ժամը 7·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասնին:

7 Յունուար, Չորեքշաբթի, Յիշատակ Մեռելոց, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8·30ին, Հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասնին, Հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց ժամը 11·45ին:













Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԷՆ

ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

ԼԻՈՆԷՆ Օր. Վարդուհի Նորոյեան այս տարի եւս մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը Տիգրան Նորոյեանի :

ՓԱՐԻԶԷՆ Օր. Սիլվիա Մանուկեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր հօրը Յովհ. Մանուկեանի, Տէսին :

ՄԱՐՍԷՅԼԷՆ Գ. Ճիճեան 1500 ֆր. կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման :

---

Տէր եւ Տիկին Միհրան Խօլմէզեան, Այրի Տիկին Նեվրիկ Ժամկոչեան, Այրի Տիկին Տիրուհի Լօղանթաճեան, Տէր եւ Տիկին Խաժոն Բէպօ (Ալժէ), Տէր եւ Տիկ. Ժան Վօլթէռ (Քանատա) եւ զաւակները, Տէր եւ Տիկին Անտուէ Պռօշէ եւ զաւակը, Օրիորդներ՝ Ժաքլին եւ Ալիս Ժամկոչեաններ, Օր. Ժանէթ Լօղանթաճեան, Տէր եւ Տիկին Միհրան Մըրմըրեան եւ զաւակները (Արժանթէօյ), Տէր եւ Տիկին Թորոս Խօլմէզեան եւ զաւակները (Արժանթէօյ), Տէր եւ Տիկին Զատիկ Յովհաննէսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Զատիկ Յակոբեան եւ զաւակները, Տիկին Ապօլոնեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կարապետ Գույումճեան (Պոլիս), Տիկին Փ. Գույումճեան, Տէր եւ Տիկին Արմենակ Գէորգեան եւ զաւակները (Լոս Անճըլըս), Տէր եւ Տիկին Գալուստ Տիլսիզեան եւ զաւակները (Արժանթէօյ), Տէր եւ Տիկին Պետրոս Պետրոսեան, ինչպէս նաեւ Իչգալացեան եւ Պետիկեան ընտանիքները խորին ցաւով կը ծանուցանեն իրենց մօր մեծ մօր, հօրաքրոջ եւ մօրաքրոջ՝

ԲԵՐԲՐՈՆԷ ԽՕԼՄԷԶԵԱՆԻ

(Ծնեալ Մըրմըրեան)

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ 28 Դեկտեմբեր, Կիրակի, Օփիթալ տը լա Փիթիէ հիւանդանոցը, 78 տարեկանին :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս - Պետրոս եկեղեցին այս Ուրբաթ ժամը 13.30ին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը :

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

---

## ՆՈՒԷՐ

Տիկին Անգլին Պուտաքեան հազար ֆր. կը նուիրէ Ս. Մուրատ վարժարանին փոխան ծաղկեպսակի Լեւոն Մողեանի մահուան առթիւ : (Ստանալ «Յառաջ»էն) :

×

Վերսայլէն Պ. Հրանդ Պալեան 46 բիւ տը լա Փարուաս, իր բժշկական գործողութենէ մըապաքինման առթիւ կընուիրէ 2500 ֆրանք Աղքատախնամին, 2500 ֆր. Ֆ. Կ. Խաչին եւ հազար ֆրանք Որբ. Օգնութեան մարմնին : Ստանալ «Յառաջ»էն :

---

ՄԱՐՍԷՅԼԻ Ամասիոյ Հայր. Միութեան վարչութիւնը շնորհակալութեամբ կը մաղթէ իր ժրաջան փոխ ատենադպիրին՝ Տիկին Արփինէ Զէյթիւնցեանի իր գործողութեան առթիւ :

×

Ամասիոյ Հայր. Միութեան (Մարսէյլ) վարչութիւնը իր սրտագին շնորհաւորութիւնները ու բարեմաղթութիւնները կ'ուղղէ համայն Ամասիոյի հայրենակիցներուն նոր տարուան եւ Ս. Ծնունդի տօներուն առթիւ :

---





Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## "ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ"Ը

Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը Փարիզի շրջանի մասնաճիւղերով կը տօնէ «Մանուկներու Օրը», Յունուար 8ին, ժամը 15-18, Սոսիէթէ Սավանթի թատերասրահին մէջ, 28 Րիւ Սէրփանթ, մեթրօ Սէն Միշէլ կամ Օտէոն :

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին.—

Ֆ. Կ. Խաչի Իսիի վարժարանի երգչախումբը, ղեկավարութեամբ ուսուցիչ Ս. Քաջեանի :

Կը ներկայացուի ԴԴՈՒՄԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ : Պերճ Պառաւեանի եւ Ժիրայր Պալեանի կողմէ :

Տրամախօսութիւն Առնուվիլի «Անարատ Յղութեան» վարժարանի աշակերտներով :

Արտասանութիւն Օր. Անժէլ Գաքոյեանէ : Պար Օր. Թերէզ Քէօշկէրեանէ եւ փոքրիկներ Արմենուհի Պազըրճեանէ եւ Ազնիւ Քէօշկէրեանէ :

Ջութերգ Նահապետեան քոյրերու կողմէ : Փոքրիկն Արմէն Խաչիկեան իր զուարթ երգերով եւ իր հեղինակած արտասանութիւններով :

ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ ՆԱԽԸՆԹՐԻՔ

Ծանօթ.— Առնուվիլէն օթօքարը կը մեկնի ժամը երկուքին Պ. Նիկողոսեանի խանութին առջեւէն :

— Ալֆորվիլէն օթօքարը կը մեկնի ժամը 2.30ին Փլաս Գառնոյէն :

— Շավիլէն օթօքարը կը մեկնի ժամը երկուքին Փուէնթ տը Շավիլէն :

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Համա - Զարսանճաղի Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղի ընտանեկան խնջոյքը նոր տարուան առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երկուքին, Յոյներուն սրահը, 5 Րիւ Պօնըֆուա :

Գեղարուեստական բաժին.— Հայկական եւ եւրոպական պար եւ զուարճալի անակնկալներ, առատ կեր ու խում, հաճելի ժամանց :

Այս առթիւ սիրով կը հրաւիրուին Լիոնի եւ շրջանի Զարսանճաղցիները եւ հայ հասարակութիւնը անխտիր :

Մուտքը ազատ է :

## ՏՕՆԱԾԱՌ

Իսիի Խրիմեան վարժարանի տօնածառի հանդէսը տեղի կ'ունենայ այս Կիրակի, ժամը 16ին, վարժարանին մէջ :

Աշակերտներու կողմէ պիտի ըլլան արտասանութիւններ, երգեր, տրամախօսութիւն մը, (Կաղանդ Պապան) եւ հաճելի անակնկալներ :

Կը հրաւիրուին բոլոր ծնողքները եւ գաղութահայութիւնը :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ՏՕՆԱԾԱՌ

Վիէնի Ֆ. Կ. Խ. մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Սէրքըլ Կաթոլիքի սրահին մէջ, Կ. Խաչի երեք դպրոցներու աշակերտներուն կողմէ երգ, արտասանութիւն, մանկական փիէս մը երեք արար : Կաղանդ Պապան փոքրիկներուն պիտի այցելէ նուէրներով բեռնաւորուած կը մնայ հայրենակիցներուն այդ օրը իրենց ներկայութեամբ քաջալերել մեր փոքրիկները :





## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՓԱՐԻԶԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՊԱՇՏԱՄՈՒՆՔՆԵՐՈՒ

Յունուար 1, Հինգշաբթի, Նոր Տարուոյ առթիւ Ս. պատարագ ժամը 10ին :

Յունուար 4 Կիրակի, Ս. պատարագ ժամը տասնին, յետ պատարագի դպրաց դասու ընդունելութիւն խորհրդարանին մէջ Ս. Ստեփանոսի տօնին առթիւ եւ ուրարակիր - կիսասարկաւագներու վկայականներու բաշխում :

Յունուար 5, Երկուշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան երեկոյեան սկիզբն. ժամերգութեան ժամը 15.30ին բարձրաձայն Ս. պատարագ ժամը 17ին :

Յունուար 6, Երեքշաբթի, Տօն Ս. Ծննդեան, ժամը ութին, բարձրաձայն Ս. պատարագ ժամը տասնին. Ջրօրհնէք ժամը 12ին, կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Սերովբէ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :

Յունուար 7, Չորեքշաբթի, Բ. օր Ս. Ծննդեան, յիշատակ Մեռելոց Ս. պատարագ ժամը տասնին :

## ՑՈՒՑԱՏԵՍԻ

ԱՆԻԷՌ.— Հ. Յ. Դ. Արամ Ենթակոմիտէն եւ Շ. Միսաքեան խումբը ընդհ. ժողովի կը հրաւիրեն իրենց շրջանի ընկերները այս Շաբաթ ժամը 21ին, Պուա Քոլոմպի կայարանին ծանօթ սրճարանը :

ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

Այս Հինգշաբթի Կաղանդ եւ Տարեմուտ 1959 Թուին Քրիստոսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց 8.30, Գոհաբանական Ս. պատարագ տասնին :

5 Յունուար Երկուշաբթի, Ճրագալոյց Ծննդեան, սկիզբ երեկոյեան արարողութեանց ժամը 3.30ին, Ս. պատարագ եւ Նախատօնակ 4.30ին :

6 Յունուար Երեքշաբթի, Ծնունդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, սկիզբ առաւօտեան արարողութեանց ժամը [illegible] մը տասնին :

7 Յունուար, Չորեքշաբթի, Յիշատակ Մեռելոց, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8.30ին, Հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասնին, Հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց ժամը 11.45ին :